Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

**Խմբագրության հասցեն.** Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի որոշումը 1949 թվի բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների մասին, հսկայական խանդավառություն է առաջացրել կոլխոզային աշխատավորության շրջանում։*

*Մեր ռեսպուբլիկայի կոլխոզները, սովխոզները, մեքենա-տրակտորային կայանները, բրիգադաները, օղակները և առանձին կոլխոզնիկներ, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցումը, հայրենասիրական նոր գործերով և անձնուրաց աշխատանքով են պատասխանում պարտիայի և կառավարության պահանջին՝ ժամանակին, բարձր որակով և անկորուստ անցկացնել բերքահավաքը։*

*Տնտեսական-քաղաքական այս կարևորագույն կամպանիայի հաջող անցկացումը լրիվին կախված է պարտիական ու քաղաքական-մասսայական աշխատանքների օրի-*

նակելի կազմակերպումից, առանց որի, ինչպես ուսուցանում է ընկեր Ստալինը, անհնար է կայուն և տևական հաջողությունների հասնել տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում։ Այս տեսակետից մեծ դեր ունեն կատարելու գյուղական ագիտատորները, որոնց կենտրոնական խնդիրն է այժմ՝ հմտորեն գլխավորել կոլխոզային աշխատավորության հարաճուն խանդավառությունը և նըպատակաղնել այն բերքահավաքը ժամանակին ու անկորուստ անցկացնելու և գյուղատընտեսական մթերքների մթերումների պետական պլանների անթերի կատարմանը, որը խոշորագույն նշանակություն ունի սովետական պետության հզորության ամրապընդման և ժողովրդի նյութական բարեկեցության առավել բարձրացման գործում։

Մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ ագիտատորներ նվիրվածությամբ աշխատում են կոլխոզային դաշտերում, հանգամանորեն բացատրում են կոլխոզնիկներին պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումներն ու միջոցառումները, լուսաբանում բերքահավաքի խնդիրներն ու ընթացքը, իրազեկ պահում սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության հարցերին։

Այս տեսակետից օրինակելի աշխատանք



է տանում Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ընկ. Գ. Այվազյանը։ Կոլխոզի բոլոր օղակներն ու ֆերմաները ապահովված են առանձին ագիտատորներով, որոնք սիստեմատիկաբար լինում են դաշտում և կոլխոզնիկների հետ ակտիվ կերպով քննարկում օրվա հրատապ հարցերը, կոլխոզի, բրիգադայի և մասնավորապես իրենց օղակի առջև դրված խնդիրները՝ բերքահավաքի հաջող կազմակերպման բնագավառում։ Ագիտատորներ Գ. Ավետիսյանը, Ջ. Բադալյանը, Ջ. Խաչատրյանը և ուրիշներ լայն բացատրական աշխատանք են տանում կոլխոզնիկների շրջանում՝ հանգամանորեն ծանոթացնելով նրանց պարտիայի և կառավարության որոշումներին, ինչպես նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրերին, որոնք վերաբերում են գյուղատնտեսության բնագավառում առաջավորների պարգևատրմանը և 1950 թ. Համամիութենական Գյուղատընտեսական ցուցահանդեսին մասնակցելուն։ Բացի այդ, ագիտատորները հաճախակի կազմակերպում են հանրամատչելի զրույցներ՝ քաղաքական, գիտական, գյուղատնտեսական, արվեստի ու գրականության թեմաների շուրջը։

Բերքահավաքի հաջող անցկացման ապարեզում որոշիչ գործոն է հանդիսանում սոցիալիստական մրցությունը, որը լայն ծավալ է ստացել գյուղի աշխատավորության մեջ։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենօրյա ղեկավարություն ցույց տալ այդ մրցությանը՝ կոլխոզների, ՄՏ կայանների, բրիգադաների և օղակների միջև, համախակի և հետևողականորեն ստուգել կոլխոզնիկների կողմից վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը և դրա արդյունքները լայն կերպով մասսայականացնել ինչպես գրույցների ընթացքում, այնպես էլ ժողովներում և մամուլում։ Այս ուղղությամբ ուշադրավ է նշել Իջևանի շրջանի Խաշթառակ գյուղի ագիտատորների աշխատանքը։ Այստեղ սոցիալիստական մրցման պայմանագրերի ստուգումը դարձել է սիստեմ, որին ակտիվ մասնակցում են բոլոր կոլխոզնիկները։ Ագիտատորներ Մատինյանը, Գուլակյանը և ուրիշներ իրենց գրույցների ընթացքում միշտ հատուկ տեղ են հատկացնում պարտավորությունների կատարման ընթացքին, խրախուսում են առաջավորներին ու մասսայականացնում նրանց աշխատանքի փորձը։ Ագիտատորների տեսադաշտից չեն վրիպում նաև ետ մնա-



ցողները, որոնց գործնական օգնություն կազմակերպելով՝ աշխատում են հասցնել առաջավորներին։ Եվ ագիտացիոն-մասսայական աշխատանքների հաջող կազմակերպմամբ և սոցիալիստական մրցության օրինակելի ղեկավարությամբ պետք է բացատրել այն հաջողությունները, որ ունի Խաշթառակի կոլխոզը։

Սակայն մեր ոչ բոլոր ագիտատորներն են, որ խորապես հասկանում են գյուղատնտեսական աշխատանքների այս եռուն շրջանում իրենց վրա դրված պարտականության ամբողջ լրջությունն ու պատասխանատվությունը։ Որոշ տեղերում ագիտացիոն աշխատանքը տարվում է չոր ու անկենդան, կտրված կոլխոզնիկի առջև դրված գործնական խնդիրներից։ Օրինակ, Բասարգեչարի շրջանի Մեծ Մազրա գյուղի ագիտատորներ Գ. Շավարշյանը, Մ. Վարդանյանը, Ն. Կուլիևը, Ա. Հարությունյանը և ուրիշներ 7—10 օրը մեկ անգամ են լինում դաշտում և այն էլ սահմանափակվում են միայն թերթի ընթերցանությամբ՝ ամենևին չխորանալով կոլխոզի և իրենց բրիգադայի գործնական հարցերի մեջ։ Բրիգադաներում լույս չեն տեսնում «ագիտ թերթիկներ», չկան տեմպերի ցուցանիշների տախտակներ, թերթերի ցուցափեղ-

կեր, չեն գործում շրջիկ գրադարաններն ու ագիտբրիգադաները։ Այս ամենից հետո պարզ է, թե ինչու Մեծ Մազրա գյուղի կոլխոզը լրիվ նախապատրաստված չէ բերքահավաքին, իսկ կոլխոզնիկների բոլոր ուժերն ու հնարավորությունները մոբիլիզացված չեն բերքահավաքի հաջող անցկացման և մթերումների պետական պլանների կատարման համար։

Անբովանդակալից աշխատանք է կատարում նաև Իջևանի շրջանի Թալա գյուղի ագիտկոլեկտիվը։ Բավական է բերել ագիտատոր Ս. Ենգիբարյանի օրինակը, որին հանձնըված է 72 կոլխոզնիկների հետ քաղաքական ագիտացիայի կազմակերպման գործը։ Ենգիբարյանը լավագույն դեպքում շաբաթը մեկ անգամ է լինում դաշտում, կազմակերպում է անբովանդակ զրույցներ՝ քաղված լրագրային հոդվածների պատահական ընտրությունից, չունի աշխատանքի պլան ու հաշվառում։ Ավելին. ագիտատորը լիովին կտրված է բրիգադայի կյանքից, չգիտի ինչպիսի հարցեր են հուզում կոլխոզնիկներին։ Բրիգադան գարնանացանի պլանը գերակատարեց 15,5 հեկտարով, իր շարքերում ունի օրեկան 0,75—1,0 հեկտար խոտ



հնձող կոլխոզնիկներ, սակայն այս ամենին անտեղյակ է ագիտատոր Ենգիբարյանը։

Այս թերությունները բխում են նրանից, որ առանձին ռայոնական կոմիտեների պրոպագանդայի և ագիտացիայի բաժինները, պարտկաբինետները և սկզբնական պարտիական կազմակերպությունները լրջորեն չեն մոտենում քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպմանը, գործնական օգնություն ու ղեկավարություն չեն ցույց տալիս ագիտատորներին։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար հրավիրել ագիտկոլեկտիվների ղեկավարների և ագիտատորների սեմինար պարապմունքներ ու հրահանգչական խորհրդակցություններ, կազմակերպել զեկուցումներ ու կոնսուլտացիաներ, գործնական օգնություն ցույց տալ նրանց ամենօրյա աշխատանքում։ Անհրաժեշտ է պարբերաբար գումարել ագիտկոլեկտիվի պարապմունքներ, որտեղ ագիտկոլեկտիվի ղեկավարը պետք է իրազեկ դարձնի ագիտատորներին բերքահավաքի ընթացքին, առաջարկի նրանց քաղաքական ագիտացիայի այն ձևերն ու մեթոդները, որոնք առավել նպատակահարմար են և ընդունելի կոլխոզնիկների կողմից։ Պետք է մանրամասն մշակել գալիք զրույցի նյութն ու առաջադրվող հարցերը, հաճախակի կազ-

մակերպել գյուղատնտեսության բնագավառի առաջավորների փորձի փոխանակումը, այդ գործում լայնորեն ներգրավելով Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներին և բարձր բերքի վարպետներին։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է դաշտում կազմակերպեն ագիտբրիգադաներ և շրջիկ գրադարաններ, ապահովելով այն՝ անհրաժեշտ գրականությամբ, թերթերով, ամսագրերով, «ագիտթերթիկներով» և ցուցադրական ագիտացիայի պարագաներով։ Քաղաքական-մասսայական ողջ աշխատանքը պետք է լիովին փոխադրել դաշտ, ուր կոլխոզնիկներն այժմ մեծ եռանդով աշխատում են հաջողությամբ պսակել բերքահավաքը։

Մեր ագիտատորները, ինչպես տնտեսական-քաղաքական բոլոր ասպարեզներում, այնպես էլ այժմ իրենց ուժերն ու հնարավորությունները ի սպաս պետք է դնեն պատվով կատարելու պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները՝ բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանը ժամանակին ու անթերի կատարելու գործում։

—◆—



# ԱՌԱՋԱՎՈՐ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԸ

Սոցիալիստական անասնաբուծության հետագա զարգացման, աշխատավորության նյութական բարեկեցության է՛լ ավելի բարձրացման նկատմամբ բոլշևիկյան պարտիայի, սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ցուցաբերած անսահման հոգատարությունը ոգեշնչում, աշխատանքային նորանոր սխրագործությունների են մղում անասնապահության ասպարեզի աշխատողներին։ Մեր կոլխոզնիկներն ու սովխոզների աշխատողները բուռն խանդավառությամբ ձեռնամուխ են եղել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ընդունած համրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանի կենսագործմանը։

Այդ հոյակապ պլանը կյանքում կենսագործելու փայլուն օրինակ են ցույց տալիս Մարտունու շրջանի Վերին Ղարանլուղ գյուղի կոլխոզի անասնապահները։ Իրենց անձնվեր աշխատանքով նրանք անընդհատ ավելացնում են կոլխոզի անասունների գլխաքա-

նակը, բարձրացնում նրանց մթերատվությունը։ Կոլխոզի անասնապահները պարտավորվել են սեփական հոտերի վերարտադրության միջոցով անասունների բոլոր տեսակների գլխաքանակն այս տարի ավելացնել 30 տոկոսով, իսկ կաթի և բրդի հանձնման պետական առաջադրանքները գերակատարել 25—30 տոկոսով։

Վերին Ղարանլուղի անասնապահները պատվով են կատարում իրենց վերցրած պարտավորությունները։ Անասնապահության զարգացման այս տարվա պետական պլանով տրված 3.200 գլուխ ոչխարների և 780 գլուխ խոշոր եղջերավոր անասունների փոխարեն կոլխոզն արդեն ունի 3400 գլուխ ոչխար և 900 գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ Կոլխոզն այս տարվա անցած ամիսների ընթացքում արդեն 22 հազար լիտր ավել է կաթ ստացել, քան անցյալ տարվա նույն ժամանակվա ընթացքում։

Կոլխոզի ձեռք բերած այս հաջողությունները հետևանք են այն բանի, որ անասնապահ կոլխոզնիկները տիրապետում են զոոտեխնիկային, որ նրա անասնապահական ֆերմաներում ճշգրիտ կերպով կիրառվում են զոոտեխնիկայի բոլոր կանոնները, լավագույն խնամք է կազմակերպված անասուն-



ների հատկապես մատղաշների նկատմամբ, ստեղծված է կերի ամուր բազա։

Նոր արոտավայրեր ստեղծելու նպատակով դեռ վաղ գարնանը կոլխոզնիկները քարերից ու մոլախոտերից մաքրեցին և կարգի բերեցին խոտհարքներն ու արոտավայրերը, անցկացրին նոր առուներ, կառուցեցին ջրամբար, հատուկ մարդիկ նշանակվեցին արոտները ջրելու և պահպանելու համար։ Այս ժրաջան աշխատանքի շնորհիվ կոլխոզի խոտհարքներն ու մարգագետիններն ավելացան 400 հեկտարով։ Այժմ կոլխոզը եռանդուն կերպով սկսել է խոտհունձը և նախատեսված է պլանով տրված 1000 հեկտարի փոխարեն հնձել 1400 հեկտար, ինչպես նաև 1000 տոննայով ավելի սիլոս պատրաստել, քան անցյալ տարի։

Կոլխոզի անասնապահների մեջ իրենց լավագույն, նվիրված աշխատանքով առանձնապես աչքի են ընկնում հորթապահներ Խ. Սարգսյանը, Ա. Մանջոյանը, հովիվներ Հ. Սահակյանը, Ա. Սաֆարյանը, ձիապաններ Յ. Բզնունին, Մ. Կիրակոսյանը և ուրիշներ։

Լավագույն անասնապահ Խաչիկ Սարգսյանը, որն իր նվիրված աշխատանքի համար կառավարության կողմից պարգևատրվել է Աշխատանքային Կարմիր Դրոշի շքա-

նշանով ոչ մի ջանք չի խնայում այդ բարձր պարգևն արդարացնելու համար։ Նա իր խընամքին հանձնված հորթերին արոտ է տանում վաղ առավոտյան, իսկ երբ շոգն ընկնում է նրանց բերում է ջրի ափին արածացնելու։ Նա առանձին ուշադրություն է դարձնում թույլ հորթերի վրա, հետևում, որ նրանք արածեն ավելի հյութալի խոտ ունեցող վայրերում։ Այս լավագույն խնամքի շնորհիվ Սարգսյանի խնամած հորթերի օրական միջին աճը հասնում է 1000 գրամի։

Կթվոր Ա. Գրեյանը, որը խնամում է 9 կով, ոչ մի հորթի կորուստ չի տվել և նրանց քաշն այժմ հասնում է 100—110 կիլոգրամի։ Գրեյանը ամեն օր սանրում ու մաքրում է իր խնամած կովերին, հետևում է, որ նրանց կերակրումը, ջրումը, աղ տալը կատարվի սահմանված ռեժիմի համաձայն։ Քրտնաջան և նվիրված աշխատանքով նա հասել է իր խնամած կովերի բարձր կաթնատվության. մայիս, հունիս և հուլիս ամիսներին առաջավոր կթվորը կաթի պլանը կատարել է 150 տոկոսով։

Անասնաբուծության զարգացման պետական պլանի կատարման, հանրային հոտերը աճեցնելու գործում Վերին Ղարանլուղի կոլտնտեսականներին մեծ օգնություն են ցույց տա-



լիս կոլխոզային ագիտատորները։ Նրանք անասնապահ կոլտնտեսականներին պարզաբանում են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ընդունած հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը, մասսայականացնում առաջավոր անասնապահների փորձը, օգնում ետ մնացողներին առաջավորներին հասնելու համար։

Կոլխոզի անասնապահների մեջ լավագույն ագիտացիոն աշխատանք է տանում ագիտատոր Գ. Սաֆարյանը։ Իր զրույցներից մեկում Սաֆարյանը պատմեց կոլխոզի առաջավոր անասնապահներ, չքանշանակիրներ Խ. Սարգսյանի և Ա. Մանչոյանի աշխատանքի փորձի մասին և խիստ քննադատության ենթարկեց անասնապահներ Խ. Սահակյանին, Վ. Գրեյանին և Բ. Ըրքոյանին, որոնք վատ են խնամում իրենց հորթերին, ժամանակին չեն դուրս բերում արոտի, վատ են կազմակերպում գիշերային արոտը։

Այս ագիտատորը խոսք տվեց առաջավոր անասնապահ Խաչատուր Սարգսյանին, որը ասաց.

— Մեզ համար, ի հարկե պատվաբեր չէ, որ մեր ֆերմայում դեռ կան մարդիկ, որոնք ինչպես հարկն է չեն խնամում անասուններին։ Մեր պարտիայի և կառավարության ա-

ռաչյադրանքը և սոցիալիստական մրցումթյամբ մեր վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար պետք է լավ աշխատի մեզանից յուրաքանչյուրը, ոչ մի ջանք չխնայի կոլխոզի հարստությունն ավելացնելու համար։

— Ընկեր Խաչատուր, իսկ դու ինչո՞վ կարող ես օգնել հետ մնացողներին,— հարցնում է ագիտատորը։

— Թող այսուհետև Սահակյանը իր հորթերին բերի, միասին կարածացնենք, ես նրանց ցույց կտամ, թե ինչպես պետք է օգտագործել արոտները, երբ արածացնել, երբ և ինչպես հանգիստ տալ հորթերին։ Եվ եթե Սահակյանն ուզենա, շատ ժամանակ չանցած նրա հորթերն էլ իմ հորթերի նման գեր ու կայտառ կլինեն։

— Իսկ Գրեյանին էլ ես ինձ հետ կտանեմ,— խոսակցությանը միջամտում է անասնապահ Արտաշես Մանջոյանը։

Եվ այդպես էլ արին։ Առաջավորների փորձին տիրապետելու համար Խ. Սահակյանն ու Վ. Գրեյանը սկսեցին իրենց հորթերը արոտ տանել առաջավոր անասնապահներ Սարգսյանի և Մանջոյանի հետ։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌՆ Է

Հարուստ ու բազմազան են ցուցադրական ագիտացիայի ձևերն ու մեթոդները։ Այդ ձևերից ու մեթոդներից են՝ պլակատները, պանոները, լոզունգները, ֆոտոցուցափեղկերը, պատվո տախտակները, դիագրամները և այլն։

Պարտիական քաղաքական-մասսայական աշխատանքների հետ միասին ցուցադրական ագիտացիան օգնում է աշխատավոր մասսաների քաղաքական արտադրական դաստիարակությանը, մոբիլիզացնում է նրանց ուշադրությունն ու աշխատանքային խանդավառությունը արտադրական ձեռնարկության, կոլխոզի ու սովխոզի առջև դրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Ցուցադրական ագիտացիան համարելով քաղաքական մասսայական աշխատանքի կարևոր բնագավառներից մեկը, Երևանի Ավտոդետալ գործարանի սկզբնական պար-

տիական կազմակերպությունը խրախուսելի նախաձեռնություն է, հանդես բերում աշխատանքի այդ բնագավառը հաջող կազմակերպելու գործում։ Շնորհիվ դրա և սոցիալիստական մրցության լայն ծավալմանը գործարանը շարունակ որակական բարձր ցուցանիշներով է կատարում իր արտադրական պլանները։ Այսպես, օրինակ, 1949 թվի առաջին կիսամյա պլանը ասորտիմենտի գծով կատարվել է 124,5 տոկոսով, համախառն արտադրանքի գծով՝ 117,5 տոկոսով հունիս ամսվա պլանը կատարվել է 152 տոկոսով։

Ցուցադրական ագիտացիայի հետ ծանոթանալու համար գործարանի պարտկազմակերպության քարտուղար ընկ. Սահակյանի հետ մտնում ենք գործարան։

Մեխանիկական ցեխի գլխավոր մուտքի ճակատին ամրացված կարմիր կտորի վրա խոշոր տառերով գրված է. «Բանվորներ ու բանվորուհիներ, ինժեներներ ու տեխնիկներ, բարելավեք արտադրության որակը, թողարկեք ավելի շատ բարձր որակի արտադրանք»։ Մուտքի աջ կողմում գտնվում է պատվո տախտակը, որին ամրացված են գործարանի անվանի մարդկանց մեծադիր լուսանկարները, նրանց աշխատանքը բնու-



թագրող համապատասխան մակագրություններով։

Ներսում դեմ առ դեմ առաստաղից կախված լոզունգը ասում է. «Շրջանառու միջոցների շրջանառությունը 1949 թվին արագացնենք 48 օրով, շրջանառությունից ազատենք 818 հազար ռուբլի»։

Այստեղ պատերը զարդարված են զանազան պլակատներով, լոզունգներով, ցուցանիշների տախտակներով, դիագրամներով և այլն։ Լոզունգներից մեկը կոչ է անում. «Ընկեր բանվորնե՛ր, հետևեցեք Ուրալի Ստալինի անվան ավտոգործարանի ստախանովական բանվորուհի Նազարովայի օրինակին, խնամքով վերաբերվեք դազգահներին, երկարացրեք նրանց աշխատանքի ժամանակամիջոցը»։

Մեխանիկական ցեխի արտադրական հիմնական հարցերից մեկը դա բաց թողնվող ավտոմոբիլային թանկարժեք մասերի որակի հարցն է։ Ցուցադրական ագիտացիան այդ հարցի վրա է բևեռում բանվորների, վարպետների և մասնագետների ուշադրությունը։ «Ալեքսանդր Չուտկիխի օրինակով պատրաստենք միայն բարձրորակ ավտոմոբիլային մասեր»— ասում է պլակատներից մեկը։

Մի քանի տեղ պատերին փակցված են հետևյալ պլակատները. «Այստեղ աշխատում է գերազանց օրակի բրիգադայի կոչման համար պայքարող բրիգադան»։

Զգալի տեղ է բռնում վարպետների մասին եղած ցուցադրական ագիտացիան։ «Վարպե՛տ, պայքարիր իրագործել ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարի որոշումը, ապահովիր պլանների կատարումը ըստ գրաֆիկի»։ Անվանի վարպետ կոմունիստ Հակոբ Շահինյանը մրցման մեջ է մտել Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի նորարար Հենրի Բորտկևիչի հետ։ Ընկ. Շահինյանն արդեն լուրջ հաջողությունների է հասել մետաղամշակման պրոցեսները արագացնելու գործում։ Փորձի փոխանակման կարգով նա նամակագրություն ունի Բորտկևիչի հետ։ Շնորհիվ ծավալված գործարար մրցության վարպետ Շահինյանի տեղամասը այս տարվա առաջին կիսամյակի պլանը կատարել է 117 տոկոսով։ Վարպետ Անդրանիկ Միսակյանը իր պլանը կատարել է 170 տոկոսով և պարտավորվել է 1949 թվի պլանը փակել նոյեմբերի 1-ին։ Ընկ. Միսակյանը, որը տալիս է միայն գերազանց որակի արտադրանք, նամակագրություն ունի Ալեքսանդր Չուտկիխի հետ։



Գործարանի պարտիական կազմակերպությունը չի մոռացել նաև երիտասարդներին ու կոմերիտականներին, որոնք զգալի թիվ են կազմում գործարանում և ահա ցուցադրական ագիտացիան արտացոլում է նրանց օրինակելի աշխատանքն ու պայքարը պլանների կատարման համար։ Պլակատներից մեկը կոչ է անում. «Կոմերիտականնե՛ր, ապահովեցեք ձեր ավանգարդային դերը արտադրության մեջ»։ Ցեխում կազմակերպված 11 կոմերիտական-երիտասարդական արտադրական բրիգադները սիստեմատիկ կերպով կատարում և գերակատարում են իրենց առաջադրանքները։

Առաջավոր կոմերիտականներից Մելքոն Գասպարյանը աշխատում է 1952 թվի հաշվին, Ժորա Այոյանը՝ 1953 թվի հաշվին, Ռադիկ Մելիքյանը՝ 1955 թվի հաշվին։

Այստեղ կայծակ թերթերի միջոցով պարտկազմակերպությունն ու ագիտատորները անմիջապես արձագանքում են օրվա կարևոր դեպքերին։ Հենց որ մի բանվոր պլանների կատարման բարձր ցուցանիշներ է տալիս նրա մասին արդեն պատրաստ է կայծակ թերթը։ Ահա այդպիսիներից մեկը. «Խառատ Սարգիս Աղաբալյանը հուլիսի 16-ին իր օրվա պլանը կա-

տարեց 600 տոկոսով։ Ընկերնե՛ր, հետևեցեք նրա օրինակին»։

Լայնորեն օգտագործվում են ցուցանիշների տախտակները։ «Օրվա առաջավորները» տախտակի վրա գրվում է այն բանվորների անունները, որոնք արտադրական լավ ցուցանիշներ են տալիս։ Մեր այցելության օրը այդ տախտակի վրա փայլում էին Խաչիկ Հայրապետյանի, Մելքոն Գասպարյանի, Ժորա Գրիգորյանի, Սարգիս Սիմոնյանի և ուրիշների անունները. նրանք իրենց օրվա պլանները կատարել էին 300—500 տոկոսով։ Տախտակներից մեկի վրա գրվում է յուրաքանչյուր բրիգադայի ամսվա պլանը և ամսվա վերջում նրա կատարողականը։ Կա նաև տախտակ, որտեղ ցույց է տրվում յուրաքանչյուր հերթափոխի, բրիգադայի, բանվորի օրվա պլանի կատարողականը, եղած թերությունները և այլն։

Ցուցադրական ագիտացիայի միջոցով մատնացույց են արվում և կշտամբվում խոտանարարները, դեպի արտադրությունը ոչ սրտացավ վերաբերմունք ունեցող մարդիկ։ Այս տեսակետից մեծ ազդեցություն է ունենում խոտանի տախտակը, որտեղ առաջին անգամ ցուցադրվում է խոտան



արված իրը, գրվում է այն արտադրողի ազգանունը և խոտանի պատճառները։

Մի տեղ պատի վրա Ավտոդետալ գործարանի բանվորները մեծ տառերով գրել են. «Սոցմրցման պայմանագիրը միայն տրված խոսք է, պետք է խոստումը գործ դարձնել»։ Եվ նրանք անխոնջ ու քրտնաջան աշխատանքով այդ խոսքը գործի են վերածում։

Այսպես է կազմակերպված ցուցադրական ագիտացիան նաև մյուս ցեխերում։

Գործարանի պարտկազմակերպությունն ու նրա բյուրոն հաճախակի քննության են առնում ցուցադրական ագիտացիայի խնդիրը, վերացնում նկատված թերությունները և միջոցներ ձեռք առնում այն ավելի հաջող կազմակերպելու և օգտավետ դարձնելու համար։

Վ. ԲԶՆՈՒՆԻ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

(Թվեր և փաստեր)

Ստալինյան նոր հնգամյա պլանի համաձայն մեր ռեսպուբլիկայում լայն ծավալ ստացավ շինանյութերի արտադրությունը։ Նոր հնգամյակի անցած տարիների ընթացքում Մինիստրության արտադրական ձեռնարկությունների թիվը կրկնապատկվեց։ Ձեռնարկությունները զգալիորեն բարձրացրել են իրենց արտադրական կարողությունները, մեխանիզացիայի ենթարկել արտադրությունը։

### ԱՐԹԻԿ-ՏՈՒՖ

Արթիկ-տուֆի հիմնական արտադրանքը՝ վարդագույն տուֆաքարը, որպես շինանյութ իր բարձր որակով հայտնի է նաև մեր ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։ Այդ լա-



վագույն, գեղեցիկ շինանյութով կառուցվում և երեսպատվում են ինչպես մեր ռեսպուբլիկայի, այնպես և ՍՍՌՄ այլ ռեսպուբլիկաների բազմաթիվ նորակառույցներ։ Արթիկ-տուֆով են երեսպատված Մոսկվայի և Միության մի շարք այլ քաղաքների մի քանի խոշոր շենքեր, Դնեպրոգէսը։

Շնորհիվ տուֆի արտադրության հիմնական աշխատանքների մեքենայացման անցած երեք տարիների ընթացքում տուֆաքարի արտադրությունը մեծ չափով աճել է։ Արթիկ-տուֆի հանքերում գործում են բազմաթիվ տուֆահատ մեքենաներ։

Այս տարի արտադրվելու է 135 հազար խորանարդ մետր տուֆ, այսինքն երեք և կես անգամ ավելի, քան 1945 թվին։ Արտադրանքի այդպիսի խոշոր աճ տեղի ունեցավ տուֆաքարի հանման հիմնական աշխատանքների մեքենայացման շնորհիվ։ Այդ մեքենայացման շնորհիվ հնարավոր է դարձել տալ մեծ քանակությամբ տուֆաքար մեխանիկական վերամշակման ենթարկված, այսպիսով խոշոր չափով կրճատելով փոխադրական ծախսերը։ Այս տարի այդպիսի վերամշակման ենթարկված տուֆաքարի քանակը կըկազմի 30 հազար խորանարդ մետր։

Արթիկ-տուֆը ձեռնարկում է ևս մի նոր

տեսակի արտադրանքի՝ տուֆաբլոկի արտադրության, որի համար օգտագործվում է տուֆի մնացուկները։ Հնգամյակի վերջին տարում արտադրվելու է մինչև 40 հազար հատ տուֆաբլոկ։

Բացի այդ, 1950 թվին արթիկ-տուֆի հանքերում շահագործման է հանձնվելու մեկ նոր, ավելի կատարելագործված հզոր տուֆահատ մեքենա, որի շնորհիվ նախ տուֆի արտադրությունը լրիվ կմեքենայացվի, և բացի այդ, տուֆաքարը քառակուսի ձևով կտրված, այսինքն միանգամայն պատրաստի վիճակում կփոխադրվի շինարարության վայրը։

## ԱՆԻ-ՊԵՄԶԱ

Հնգամյակի երեք տարիների ընթացքում առանձնապես աճել և իր արտադրական հզորությունը մեծացրել է Անի-պեմզան։ Եթե 1945 թվականին նա տալիս էր տարեկան 39 հազար խորանարդ մետր պեմզա, ապա արդեն 1948 թվին այդ արտադրանքն ավելացավ 5 անգամ և հասավ 194 հազար խորանարդ մետրի։ 1949 թվին հանքերը պետք է արտադրեն 200 հազար խորանարդ մետր, իսկ 1950 թվին կտրվի 300 հազար խորանարդ մետր պեմզա։

Անի-պեմզայի տված արտադրանքը կա-



ռևոր շինանյութ է, այն օգտագործվում է պեմզա-բլոկի արտադրության մեջ որպես հիմնական շինանյութ։ Բացի պեմզայից Անի-պեմզան տալիս է նաև այլ արտադրանքներ՝ պեմզայի քար, կրային ցեմենտ և տուֆ։

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Երևանի Շինանյութերի գործարանը, որ գործարկվել է 1945 թվին, ռեսպուբլիկայի խոշոր արտադրական ձեռնարկություններից է։ Գործարանի հիմնական արտադրանքը պեմզաբլոկն է, արտադրվում է նաև միջնորմի սալիկներ, մոզայիկ աստիճաններ։ .

Իր շահագործման առաջին տարում գործարանը տվել է 9.000 պեմզա-բլոկ. հրնգամյակի վերջին տարում կտրվի 13 անգամ ավելի պեմզաբլոկ։

Բացի այդ, միջնորմի սալիկների և մոզայիկ աստիճանների արտադրությունը հնգամյակի առաջին տարվա համեմատությամբ 1950 թվին կավելանա 16 անգամ։

## ՄԱՐՄԱՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Մեր ռեսպուբլիկան հարուստ է բարձրորակ մարմարով։ Հայաստանի վարդագույն, սպիտակ, կաթնագույն և սև մարմարները

լայնորեն օգտագործվում են. ամբողջ Սովետական Միության մեջ: Հայաստանի մարմարով է երեսպատված Մոսկվայի մետրոպոլիտենի մի շարք կայարաններ, այն զարդարում է կուլտուրայի և արվեստի շատ նորակառույց օջախներ:

Նոր հնգամյակից առաջ Երևանի Մարմարի գործարանը ունեի շատ փոքր կարողություն և հնարավորություն չուներ վերամշակելու մեծ քանակությամբ մարմար: Նոր հնգամյակի ընթացքում հիմնովին փոխվեց գործարանի տեսքը: Բավական է ասել, որ 1945 թվին արտադրած 84 քառակուսի մետր մարմարի տախտակի փոխարեն 1948 թվականին գործարանը տվեց 1000 քառակուսի մետր տախտակ: Մարմարի տախտակից բացի գործարանն արտադրում է մարմարե խիճ, մոզայիկ աստիճաններ պատրաստելու համար:

Ըստ նոր հնգամյակի պլանի Երևանի մարմարի գործարանը 1950 թվին միայն մարմարի տախտակ կտա 3 անգամ ավելի, քան 1948 թվին, այսինքն 3.000 քառակուսի մետր:

## ԱՂՅՈՒՍ-ԿՂՄԻՆԴՐԻ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Երևանի Աղյուս-կղմինդրի գործարանը նոր հնգամյակի ընթացքում զգալիորեն



բարձրացրեց արտադրողականությունը: Եթե 1945 թվին գործարանը տալիս էր 8.000 կղմինդր և 99 հազար աղյուս, ապա հնգամյակի վերջին տարում կտա 3 և կես միլիոն կղմինդր և մեկ և կես միլիոն աղյուս:

Կիրովականի աղյուս-կղմինդրի գործարանը 1945 թվին արտադրած 680 հազար կղմինդրի և 102 հազար աղյուսի փոխարեն հնգամյակի վերջին տարում կարտադրի 3 միլիոն կղմինդր և մեկ միլիոն աղյուս:

## ՓԱՄԲԱԿԻ ԳՐԱՆԻՏԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

Փամբակի գրանիտը հայտնի է իր բարձր որակով: Այն օգտագործվում է ոչ միայն շինարարության՝ գեղեցիկ կառուցումների համար, այլև քանդակագործության մեջ: Փամբակի գրանիտը օգտագործվել է Մոսկվայի Մետրոյի կառուցման համար: Գրանիտով է երեսպատված Երևանի Օպերայի և բալետի թատրոնի շենքը, բժշկական ինստիտուտի շենքը և այլ շենքեր:

Երևանի Լենինի հրապարակում վեր խոյացող Լենինի արձանի պատվանդանը ամբողջությամբ գրանիտից է, գրանիտից է քանդակված նաև Մայիսյան ապստամբության հերոս Ղուկաս Ղուկասյանի արձանը:

1940 թվին արտադրվել է 3000 քառակու-

սի մետր գրանիտ, 1948 թվին՝ 20.350 քառակուսի մետր, իսկ հնգամյակի վերջին տարում նրա արտադրությունը կհասնի 40 հազար քառակուսի մետրի։

## ՆՈՐ ՀԱՆՔԱՎԱՅՐԵՐ

Հաշվի առնելով ռեսպուբլիկայում օրեցօր աճող շինարարության պահանջները Շինանյութերի մինիստրությունը ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում 1948 թվից կազմակերպել է 6 հանքավայրչություն։ Անցած տարում տրվել է 22 հազար խորանարդ մետր տուֆ. 1949 թվին կտրվի 80 հազար, իսկ հնգամյակի վերջին տարում 130 հազար խորանարդ մետր տուֆ։

Այս հանքերից իր արտադրանքով հայտնի է Ալավերդու շրջանի Քոլագիրանի հանքավայրչության արտադրանքը՝ վարդագույն տուֆը, որը իր թեթևությամբ և գեղեցիկ գույնի հետ միասին, ունի մեծ կարծրություն։

Բարձրորակ է նաև Նոյեմբերյանի բաժանմունքի արտադրանքը՝ ֆելզիտային տուֆը, որը շատ գեղեցիկ տեսք ունի։ Այդ տուֆաքարից է կառուցվում մայրաքաղաքի Լենինի հրապարակի վրա բարձրացող «Արարատ» տրեստի վարչության գեղատեսիլ շենքը։

---

# ՄԵԶ ՄՈՏ ԵՎ ՆՐԱՆՑ ՄՈՏ

(Թվեր և փաստեր)

**ՍՍՌՄ-ՈՒՄ**

> «Ժողովրդական տնտեսության անընդհատ հզոր վերելքի հիման վրա աճում է աշխատավորական մասսաների բարեկեցությունը, ավելի ու ավելի հարստանում է սովետական ժողովրդի հոգևոր կուլտուրան»։
>
> (Ընկեր Ստալինին ուղղված մոսկվացիների նամակից)։

Մեր սոցիալիստական արդյունաբերությունը գնալով ավելի ու ավելի է մետաղ, ածուխ, նավթ, զանազան մեքենաներ, գործվածքեղեն, կոշիկ և արդյունաբերական այլ տեսակի ապրանքներ արտադրում։ Մենք հսկայական քայլերով առաջ ենք շարժվում։

★ Ետպատերազմյան ստալինյան հնգամյակում արդյունաբերության զարգացման տեմպերը զգալիորեն գերազանցում են 1938—1940 թվականների բարձր տեմպերին։ Երրորդ հնգամյակի առաջին երեք տարում արդյունաբերական արտադրանքն ամեն տա-

րի ավելանում էր միջին հաշվով 13 տոկոսով։ Այս հնգամյակի առաջին տարում մեր արդյունաբերությունը 20 տոկոսով ավելի շատ արտադրանք է տվել, քան 1945 թվականին, երկրորդ տարում՝ 22 տոկոսով ավելի շատ, քան 1946 թվականին։ 1948 թվականին արդյունաբերական արտադրանքի թողարկումը նախորդ տարվա համեմատությամբ աճել է ևս 27 տոկոսով։

★ Մեր երկրում տեղի է ունենում արդյունաբերական վիթխարի շինարարություն։ Միայն 1946, 1947 և 1948 թվականների ընթացքում վերականգնվել և նոր կառուցվել է չորս հազար պետական արդյունաբերական ձեռնարկություն։

★ Ետպատերազմյան ստալինյան հնգամյակի վերջին տարում արտադրվելու է 4 և կես միլիոն տոննա ավելի չուգուն, ավելի քան յոթ միլիոն տոննա պողպատ, քան 1940 թվականին։ Ածուխ կհայթհայթվի 84 միլիոն տոննայով ավելի, քան 1940 թվականին։ Բայց չէ՞ որ 1946 թվականին չուգուն ձուլվեց համարյա 4 անգամ ավելի, և պողպատ 4 և կես անգամ ավելի, քան ցարական Ռուսաստանում 1913 թվականին։ 1940 թվականին ածուխ հայթհայթվեց 5 և կես անգամ ավելի, քան 1913 թվականին։



★ Վերջին երկու տարում սովետական ժողովուրդը լայն սպառման ապրանքների գների իջեցումից շահում է մոտ 157 միլիարդ ռուբլի։

Արդեն 1948 թվականին սովետական ռուբլու գնողունակությունը բարձրացավ երկու անգամ, իսկ բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացավ ավելի քան երկու անգամ, որովհետև բարձրացավ նաև դրամական աշխատավարձը։

1949 թվականի մարտին պետական և կոոպերատիվ խանութներում միջին թվով ամեն օր ավելի շատ էր վաճառվում, քան փետրվարին՝ մսամթերք 23 տոկոսով, յուղ՝ 22 տոկոսով, բրդի գործվածքներ՝ 38 տոկոսով, պատրաստի հագուստեղեն՝ 51 տոկոսով, կաշվե կոշկեղեն՝ 54 տոկոսով։

★ Ետպատերազմյան հնգամյակի տարիների ընթացքում Սովետական Միության քաղաքներում և բանվորական ավաններում շարքի մեջ է մտցված մոտ 51 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Գյուղում կառուցվել և վերականգնվել է ավելի քան մեկ միլիոն 600 հազար տուն։

★ Երկրի հանրակրթական դպրոցներում ու տեխնիկումներում սովորում է 34,5 մի-

լիոն մարդ, բարձրագույն դպրոցում մեկ միլիոնից ավելի ուսանող։

✪ 1948 թվականի ընթացքում 2 միլիոն մարդով ավելացել է բանվորների և ծառայողների թիվը Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ։ Արդյունաբերության և շինարարության մեջ և տրանսպորտում աշխատելու համար ուղարկված են մեկ միլիոն երիտասարդ որակյալ բանվորներ, որոնք ավարտել են արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանները և ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցները։

Արտադրության մեջ անհատական-բրիգադային ուսուցման և կուրսային ուսուցման միջոցով մեկ տարում պատրաստվել են 2 միլիոն 300 հազար նոր որակյալ կադրեր, 3 միլիոն 800 հազար մարդ բարձրացրել է իր որակը։

★ Հենց միայն Համամիութենական հեռակա գյուղատնտեսական ինստիտուտում, առանց արտադրությունից կտրվելու սովորում են գյուղատնտեսության 10 հազար աշխատողներ— կոլխոզների նախագահներ, կոլխոզային ու սովխոզային ագրոնոմներ, զոոտեխնիկներ, մեխանիզատորներ և այլն։

★ 1948 թվականին երկրի պրոֆմիութե-



նական ակումբներում, կուլտուրայի պալատներում ու տներում դասախոսություններ են լսել 33,5 միլիոն մարդ։ Ակումբային խմբակներում մասնակցում են ավելի քան 5 միլիոն բանվորներ, ծառայողներ և նրանց ընտանիքի անդամներ։ Մեկ և կես միլիոն մարդ է պարապում 95 հազար գեղարվեստական խմբակներում— դրամատիկական, երգեցիկ, երաժշտական, կերպարվեստի և այլն։

★ Աճում է գրքերի և բրոշյուրների լույս ընծայումը։ 1947 թվականին հրատարակված գրքերի տիրաժը 21 տոկոսով գերազանցում է նախապատերազմյան վերջին տարվա ընթացքում լույս ընծայածից։ 1948 թվականին հրատարակվել են ավելի քան 40 հազար զանազան գրքեր ու բրոշյուրներ, ավելի քան 800 միլիոն օրինակ տիրաժով։

★ Հենց միայն 1948 թվականի ընթացքում երկրի սանատորիաներում և հանգստյան տներում տեղերի քանակը ավելացել է 28 հազարով։ Պրոֆմիութենական հանգստյան տներում ու սանատորիաներում իրենց ուժերն ու առողջությունը վերականգնել են մոտ 2 միլիոն մարդ։

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Կապիտալի երկրներում ջարունակվում է արտադրության անկումը, աճում է գործազուրկների բանակը, բարձրանում են գները, իջնում է բանվորների ռեալ աշխատավարձը։ Սովն ու մասսայական աղքատությունն է վիճակված կապիտալիստական երկրների միլիոնավոր աշխատավորներին։

★ *Ամերիկյան ընկերությունների մաքուր շահույթները 1948 թվականին հասան ԱՄՆ-ի պատմության մեջ չտեսնված չափերի—20,8 միլիարդ դոլլարի, այդ երկու անգամ ավելի է, քան 1944 թվականին։ Հազար ամերիկյան հարուստներ շաբաթվա ընթացքում շահում են 580 միլլիոն դոլլար, այսինքն նրանցից յուրաքանչյուրը միջին հաշվով շաբաթական ստանում է մոտավորապես 580 հազար դոլլար եկամուտ։ Ահա և ուրիշ թվեր. չորս միլիոն ամերիկյան բանվոր շաբաթական վաստակում են ընդամենը 16-ական դոլլար և 10 միլիոն այլ բանվորներ ընդամենը 26-ական դոլլար։ Իսկ ամերիկյան միջին ընտանիքի շաբաթական ապրուստի մինիմումը հավասար է 80 դոլլարի։ Հաշված է, որ ԱՄՆ-ում քաղցում է քաղաքի յուրաքանչյուր յոթերորդ բնակիչը։*



*Այժմ, ինչպես և ավելի քան 30 տարի սրանից առաջ, վիթխարի, մերկացնող ուժով են հնչում Լենինի խոսքերը. «Ամերիկյան միլիարդատերերը... ուռճացել են բոլորից շատ։ Նրանք իրենց հարկատուներն են դարձրել բոլոր, նույնիսկ ամենահարուստ երկրներին։ Նրանք կողոպտել են հարյուր միլիարդավոր դոլլարներ։ Եվ յուրաքանչյուր դոլլարի վրա երևում են կեղտի հետքեր... յուրաքանչյուր դոլլարի վրա արյան հետքեր...»։*

★ *ԱՄՆ-ում բանվորների և ծառայողների թիվը 1948 թվականի ընթացքում նվազել է 3 միլիոն մարդով։ Միայն Նյու-Յորքի նահանգում կա 700 հազար գործազուրկ։ Իրենց ընտանիքների հետ միասին Նյու-Յորքի գործազուրկները կարող են կազմել մի խոշոր քաղաքի բնակչություն։ Այժմ ԱՄՆ-ում կան ավելի քան 18 միլիոն լրիվին կամ մասնակի գործազուրկներ։ Ռետինի արդյունաբերության պրոֆմիության բոլոր անդամների կեսը կամ բոլորովին չի զբաղված, կամ զբաղված է մասնակիորեն։*

*1949 թվականի հունվարին ԱՄՆ-ում իջեցվեց աշխատավարձը։ Այդ բանվորների և ծառայողների տարեկան եկամուտը պակասեցրեց 1 միլիարդ 700 միլիոն դոլլարով։ Փետրվարին կատարված նոր իջեցումը բան-*

վորների եկամուտը կրճատեց ևս մեկ միլիարդ դոլլարով։

★ Տարեց-տարի աճում են գները։ 1947 թվականի մայիսին առաջին անհրաժեշտության մթերքներն ու ապրանքները 1946 թվականի մայիսի համեմատությամբ թանկացան 10 տոկոսով։ 1948 թվականի մայիսին՝ 1947 թվականի մայիսի համեմատությամբ 20 տոկոսով։ 1945 թվականի օգոստոսից մինչև 1949 թվականի հունվարը գներն ԱՄՆ-ում աճեցին ավելի քան 40 տոկոսով, իսկ լայն սպառման որոշ ապրանքներինը՝ վերջին երկու տարում բարձրացան 200—300 տոկոսով։ Ավելացել է բնակարանի վարձը և բոլոր տեսակի կոմունալ սպասարկումների արժեքը։

★ ԱՄՆ-ի արդարադատության մինիստր Կլարկը իր զեկուցման մեջ հաղորդել է. «Միացյալ Նահանգներում ներկայումս կան մի քանի միլիոն երեխաներ, որոնք չեն սովորում դպրոցներում, ավելի քան երկու միլիոն երեխաներ միանգամայն անբավարար են հաճախում դպրոցներ, երեք միլիոն մեծահասակներ երբեք չեն սովորել դպրոցում, իսկ տասը միլիոնը ստացել են այնքան անբավարար կրթություն, որ նրանք փաստորեն անգրագետ են»։

★ Ամերիկյան հիվանդանոցում մի շա-



բաթ մնալը աշխատավորի վրա նստում է 250-ից մինչև 750 դոլլար։ Եվ դա այն պայմաններում, երբ բանվորը շաբաթական վաստակում է 16, ամենաշատը՝ 26 դոլլար։

★ 1948 թվականի ընթացքում, ըստ ամերիկյան պաշտոնական տվյալների, արձանագրված է 3.300 գործադուլ, որոնց մասնակցել են երկու միլիոն բանվորներ։

★ 1948 թվականին, ինչպես ռադիոյով հայտարարել է սենատոր Մորզեն, Լինչի դատաստանին էին ենթարկվել 530 նեգր։

★ 1920 թվականի ճգնաժամի ժամանակ ԱՄՆ-ում արտադրությունը 6 ամսում կրճատվեց 6 տոկոսով։ 1948 թվականի նոյեմբերից մինչև 1949 թ. մայիսը, վեց ամսում արտադրությունը կրճատվեց 11 տոկոսով։

1949 թվականի հունվար-մարտ ամիսների տվյալների զուգադրումը պատերազմից հետո ձեռք բերված ավելի բարձր մակարդակի հետ, ցույց է տալիս, որ կոշիկի արտադրությունը պակասել է 24 տոկոսով, բիտումինոզային ածխինը՝ 16 տոկոսով, տեքստիլի արտադրությունը 20 տոկոսով, սարքավորմանը 13 տոկոսով, երկաթուղիներում բարձումը ընկել է 13 տոկոսով։ 50 տոկոսով կրճատվել է բնակարանային շինարարությունը։

★ Վերահաս ճգնաժամի մասին է խոսում ամերիկյան էքսպորտի խիստ անկումը—23

տոկոսով։ Չնայելով «Մարշալի պլանին», ածխի արտահանումը ԱՄՆ-ից 1948 թվականին, 1947 թվականի դիմաց կրճատվել է 20 միլիոն տոննայով։

★ Ամերիկայում աճում է սնանկացումների թիվը։ Անցյալ տարվա համեմատությամբ սնանկացումների թիվն աճել է երկու անգամ։

★ Անգլիայում պարենային դրությունը շարունակում է վատանալ։ Բոլոր կարևորագույն սննդամթերքները նախկին ձևով տրըվում են քարտերով։ Մարդուն ամսական հասնում է մոտ 350 գրամ ճարպ, մոտ 900 գրամ միս։

Միսը առանձնապես դեֆիցիտային մթերք է հանդիսանում։ Շվեցարական «Դի Վելտեխովե» թերթի վկայությամբ, Անգլիայում ձիու և կետի մսի գործածությունը կենցաղի մեջ դարձել է տարածված և շատ սովորական երևույթ։ Ձիու միսը կարելի է տեսնել Լոնդոնի և Անգլիայի մյուս քաղաքների լավագույն խանութների վաճառասեղանների վրա։

★ Սննդամթերքների և լայն սպառման ապրանքների գներն աճում են բոլոր կապիտալիստական երկրներում։ Վերջին տարում Ֆրանսիայում և Իտալիայում գներն աճել են մեկ և կես անգամ։ 1938 թվականի համեմա-



տությամբ կյանքը Ֆրանսիայում թանկացել է 19 անգամ, իսկ Ֆրանսիայում կապիտալիստների շահույթները աճել են 30 անգամ։

★ Մի տարի առաջ Արգենտինայի պրեզիդենտ Պերրոնը պաշտոնապես հայտնեց, որ այդ ռեսպուբլիկայում ոչնչացված է 7 միլիոն տոննա հացահատիկ։ Մեկ և կես ամիս հետո, Արգենտինայի տնտեսական բարձրագույն խորհրդի նախագահ Միրանդան պահանջեց դարձյալ այրել 300 հազար տոննա ցորեն։ Այդ արվում է այն նպատակով, որ կապիտալիստները կարողանան բարձրացնել սննդամթերքների գները և վիթխարի շահույթներ ստանալ։

★ Այժմ Անգլիայում կա մոտ մեկ միլիոն գործազուրկ, Իտալիայում՝ երկու և կես միլիոնից ավելի գործազուրկ։ Իտալիայի յուրաքանչյուր երրորդ բանվորը աշխատանք չունի։ Նույնիսկ փոքրիկ Բելգիայում կա 300 հազարից ավելի գործազուրկ։

(„Блокнот Агитатора" № 17, 1949 г.).

# ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

*Ռումինիան Հարավ-արևելյան Եվրոպայի այն երկրներից է, որին երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում ֆաշիստական լծից ազատագրեց փառապանծ Սովետական Բանակը։ Ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների նման Ռումինիայի աշխատավորները, հռչակելով Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկա, իրագործել են խոշորագույն դեմոկրատական վերափոխություններ։ Երկրում ոչնչացված է հին, շահագործողական պետական ապարատը, ստեղծված է նոր պետական ապարատ, որն իրագործում է աշխատավորների կամքը։*

*Հենվելով Սովետական Միության եղբայրական և անշահախնդիր օգնության և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների համագործակցության վրա, Ռումինիայի ժողովուրդն իր երկրում կառուցում է սոցիալիստական հասարակարգի հիմքերը։*

*Ռումինիան գրավում է 244,6 հազար քառակուսի կիլոմետր տարածություն, 1948 թվականի տվյալների համաձայն բնակչությունը կազմում է 15.872.624 մարդ։*



*Ըստ պետական կառուցվածքի Ռումինիան ժողովրդական ռեսպուբլիկա է։ Գերագույն օրենսդրական օրգանը հանդիսանում է Ազգային Մեծ Ժողովը։ Ազգային Մեծ Ժողովը ընտրում է նախագահություն, որն իր ամբողջ գործունեության համար հաշվետու է նրա առջև։ Գործադիր օրգանը—Մինիստրների Սովետն է, պրեմիեր-մինիստրի գլխավորությամբ։ Ազգային Մեծ Ժողովի կողմից 1948 թվականի ապրիլի 13-ին ընդունված նոր կոնստիտուցիայի համաձայն իշխանության տեղական օրգանները հանդիսանում են ժողովրդական սովետները, որոնք ընտրվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրությամբ, գաղտնի քվեարկությամբ։*

*Ժողովրդա-դեմոկրատական կարգի քաղաքական հիմքը կազմում է բանվորների և գյուղացիների դաշինքը, բանվոր դասակարգի ղեկավարությամբ։ Պետական իշխանությունը, հանդիսանալով պրոլետարիատի դիկտատուրայի յուրահատուկ ձևը, իր առաջ նպատակ է դնում ճնշել տապալված շահագործող դասակարգերի դիմադրությու-*

նը, պաշտպանել երկիրը իմպերիալիստների
հնարավոր հարձակումից, ապահովել սո-
ցիալիստական հասարակության կառու-
ցումը։
Ռումինիայի պետական իշխանության
բարձրագույն և տեղական օրգանները իսկա-
կան ներկայացուցչական հիմնարկներ են,
որոնք իրագործում են աշխատավորների
կամքը։ Գերագույն օրգանի սոցիալա-
կան կազմը արտացոլում է ժողովրդա-դե-
մոկրատական պետության դասակարգային
բնույթը։ Ռումինիայի Ազգային Մեծ Ժողո-
վում կա 177 բանվոր, 66 գյուղացի։ Բնորոշ
է, որ Ռումինիայի նախապատերազմյան
պառլամենտում, որն ընտրվել էր 1938 թը-
վականին, 261 դեպուտատ (347 դեպուտա-
տից) պատկանում էր խոշորագույն կապի-
տալիստների ու կալվածատերերի թվին։
Ռումինիայի այդ ժամանակվա պառլամեն-
տի կազմում ոչ մի բանվոր և գյուղացի
չկար։
Նոր, ժողովրդա-դեմոկրատական կառա-
վարությունը դոկտոր Պետրու Գրոզայի գըլ-
խավորությամբ, ձեռք զարկեց ժողովրդա-
տնտեսական և ներ-քաղաքական արմատա-
կան բարեփոխությունների իրականացմանը։
Ռումինիայի դեմոկրատական լագերի ա-



ռաջատար ուժը, նրա ավանգարդը դարձավ
Ռումինիայի կոմունիստական պարտիան,
որը 20 տարի շարունակ աշխատում էր խո-
րը ընդհատակում։
1945 թվի մարտի 20-ին կառավարությու-
նը հողային ռեֆորմ հրապարակեց։ Խոշոր
կալվածատերերից և ժողովրդի թշնամինե-
րից բռնագրավված հողը բաժանվեց աշխա-
տավոր սակավահող և հողազուրկ գյուղա-
ցիների միջև։ Չքավորագույն գյուղացիու-
թյունը ստացավ ավելի քան 1,5 միլիոն
հեկտար վարելահող և գյուղատնտեսական
գործիքներ։ 900 հազար գյուղացիական
տնտեսություններ, այդ թվում 400 հազար
հողազուրկ չքավորներ ստացան 1,4 միլիոն
կալվածատիրական վարելահողեր։ Բացի
դրանից, 200 հազար հեկտար տարածության
վրա կազմակերպվեց ավելի քան 350 պե-
տական ֆերմա։ Այնուհետև կառավարու-
թյունը մի շարք օրենքներ հրապարակեց, ո-
րոնք նպաստեցին երկրի տնտեսությունը վե-
րականգնելուն և քաղաքական կյանքի դե-
մոկրատացմանը։ Ազգայնացված են
բանկերը, որից հետո իրականացվել է դը-
րամական ռեֆորմ, վերջ տրվեց ինֆլյացիա-
յին, որը հարստացնում էր սպեկուլյանտնե-
րին և աղքատացնում էր բնակչության աշ-

խատավոր խավերին։ Ազգայնացված է խոշոր արդյունաբերությունը։

Ռումինական ժողովրդի կյանքում խոշորագույն իրադարձություն հանդիսացավ 1945 թվին Հյուսիսային Տրանսիլվանիայի վերամիավորումը Ռումինիային։ Ռումինական ժողովուրդն իր երկրում ազգերի փոխհարաբերության հարցը լուծեց իր մեծ բարեկամի—Սովետական Միության օրինակով, տարբեր ազգերի միջև հաստատելով բարեկամություն և փոխադարձ հարգանք։ Հյուսիսային Տրանսիլվանիան այլևս կռվախնձոր չէ Ռումինիայի և Հունգարիայի միջև։ Նա վերադարձված է Ռումինիային, որից այն խլել էր Հիտլերը 1940 թվի օգոստոսին։

Ռումինական ժողովրդական դեմոկրատիան խոշոր նվաճումներ է ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի ասպարեզում։ Ռումինիան իր արդյունաբերության կարևորագույն ճյուղերում արդեն հասել է նախապատերազմյան մակարդակին։ Գործարանների և ֆաբրիկաների ղեկը իրենց ձեռքը վերցնելով բանվորները հիանալի կերպով գործը գլուխ են բերում առանց նախկին տերերի։

Նոր, սոցիալիստական հիմքերի վրա եր-



կրի վերակառուցումն իրագործելու համար խոշորագույն նշանակություն ունեցավ կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական պարտիաների միավորումը մեկ ընդհանուր պարտիայի՝ Ռումինիայի բանվորական պարտիայի մեջ։ Այդ միավորումը ձևավորվել է 1948 թվականին երկու պարտիաների միացյալ համագումարում, Բուխարեստում։ «Ոգեշնչված Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի մեծ ուսմունքով,—ասված է համագումարի բանաձևի մեջ,—Ռումինիայի բանվորական պարտիան կարող է պատվով կատարել դեմոկրատիայի ղեկավար ուժի իր միսիան, ձեռք բերել նոր նվաճումներ նրա ամրապնդման համար և հիմքեր ստեղծել սոցիալիստական հասարակարգին անցնելու համար»։

Պետական իշխանության, նմանապես և խոշոր արդյունաբերության, հաղորդակցության միջոցների, բանկերի անցումը ժողովրդի ձեռքը հնարավորություն ընձեռնեց ժողովրդական կառավարությանը ձեռնարկել երկրի տնտեսության պլանավորմանը։ Ռումինիայի բանվորական պարտիայի նախաձեռնությամբ մշակված և 1948 թվականի վերջերին Ազգային Մեծ Ժողովի կողմից հաստատված ժողովրդական տնտեսության

զարգացման 1949 թվականի պլանը նախատեսում է արդյունաբերության արագ աճ։ Այսպես օրինակ՝ 1948 թվականի համեմատությամբ չուգունի ձուլումը կավելանա 35 տոկոսով, պողպատինը՝ 16 տոկոսով, գլանվածքինը՝ 30 տոկոսով։ Մետաղամշակման արդյունաբերության արտադրությունը 1949 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, աճելու է 35 տոկոսով։ Նավթի հանույթը 1948 թվականի դիմաց կավելանա 13,7 տոկոսով, ածուխինը՝ 15 տոկոսով։

Նշանավոր խրադարձություններ են տեղի ունենում նաև ռումինիական գյուղում։ Երբեմնի աղքատիկ, ադետ ռումինիական գյուղը քաղաքական, տնտեսական և կուլտուրական վերածնունդ է ապրում։ Ահա մերձդանուբյան գյուղերից մեկը՝ Ցոլշանի գյուղը։ 125 գյուղացիական ընտանիք սեփական հող են ստացել նախկին կոլվածատիրական կալվածքից։ Երեկվա բատրակները հողատեր են դարձել։ Բուխարեստի մեքենաշինարարական գործարանի բանվորները, որոնք այդ գյուղի շեֆն են, օգնում են գյուղին ինչով կարողանում են։ Նրանք ուղարկել են վերանորոգող բրիգադաներ և գեղարվեստական ինքնագործ խմբակներ, նորոգել են գյուղատնտեսական գործիքները



և մեքենաները, դպրոցներ են ունեցել, դասախոսություններ են կարդացել, համերգներ են տվել գյուղում։

Երկրում լուրջ միջոցառումներ են գործադրվում ժամանակակից առաջավոր տեխնիկայի և գիտության հիման վրա գյուղատնտեսության արտադրողական ուժերը բարձրացնելու համար։ Ստեղծվել է մեքենա-տրակտորային կայանների դնալով ավելի լայնացող ցանց։ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան տրակտորներ է ստանում ՍՍՌՄ-ից և Սովետական Միության օգնությամբ ծավալում է տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների սեփական արտադրությունը։ Ներկայումս Ռումինիայում կա 2,5 հազար տրակտոր։

Այս տարվա գարնանը ռումինական գյուղում ստեղծվեցին հողը համատեղ մշակող շատ ընկերություններ։ Այժմ արդեն Ռումինիայում 300 հազարից ավելի գյուղացիական տնտեսություններ միավորվել են այդպիսի ընկերությունների մեջ։

Կարճ ժամանակամիջոցում շատ բան է կատարված նաև գյուղի կուլտուրական վերելքի համար, մուծը մոռացված ռումինական գյուղացու լուսավորության համար։ 600 հազար անգրագետ գյուղացիներ գրա-

գիտություն են սովորել: Այս տարի նախատեսված է գրագետ դարձնել 2 միլիոնից ավելի մարդ: Բարելավվել է գյուղի բժշկական սպասարկումը: Եթե նախկինում գյուղական 12 հազար բնակչին սպասարկում էր միայն մեկ բժիշկ, ապա ներկայումս յուրաքանչյուր գյուղ ունի իր բժիշկը կամ բուժակը: Ազգայնացված են բոլոր մասնավոր հիվանդանոցները: Գյուղերում և հիմնարկություններին ու ձեռնարկություններին կից բացված են հարյուրավոր նոր ծննդատներ, մանկամսուրներ ու մանկապարտեզներ:

Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան զգալի նվաճումներ է ձեռք բերել նաև պետական առևտրի ընդարձակման և ամրապնդման գործում: Ներկայումս երկրում արդյունաբերական ապրանքների 80 տոկոսը վաճառվում է պետական խանութների միջոցով:

Արդյունաբերության, առևտրի ու ֆինանսական սիստեմի վերակառուցման հետևանքով պետությունը 1948 թվականի ընթացքում հնարավորություն ունեցավ երեք անգամ նորմավորված ապրանքների գների իջեցում կատարել: Դրա շնորհիվ բանվորների ռեալ աշխատավարձը բարձրացավ 22 տոկոսով:



Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, ազատագրվելով օտարազգի իմպերիալիստների լծից, այժմ վարում է անկախ արտաքին քաղաքականություն: Նա բարեկամական հարաբերություններ է հաստատել մեծ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների հետ: Սովետական Միության և Ռումինիայի միջև լայն չափով զարգանում են տնտեսական և կուլտուրական կապերը, որոնք հիմնված են հավասարության և փոխադարձ օգնության սկզբունքների վրա:

Այն ժամանակ, երբ այսպես կոչված «մարշալականացված» երկրները ոչ մի կերպ չեն կարողանում դուրս գալ տնտեսական դժվարությունների ճիրաններից, երբ նրանց մոտ օրստօրե աճում է գործազրկությունը, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները, նույնպես և Ռումինիան ապրում են տնտեսական վերելքի բուռն շրջան:

Ինչպես ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում, այնպես էլ Ռումինիայի աշխատավորներն իրենց երկրում նոր կյանքի կառուցման գործում հենվում են ՍՍՌՄ սոցիալիստական շինարարության հարուստ փորձի և մեծ Սովետական Միության բարեկամական օգնության վրա:

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 8-րդ հատոր, *787 էջ, գինը 8 ռ.:*

Ա. Ի. ԳԵՐՑԵՆ.— Ընտիր փիլիսոփայական երկեր, *462 էջ, գինը 10 ռ.:*

✪— *ՀամԿ(բ)Պ* դիրեկտիվները և սովետական կառավարության որոշումները ժողովրդական կրթության մասին, *148 էջ, գինը 10 ռ.:*

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ. Երկերի ժողովածու, *հատոր 5-րդ, 545 էջ, գինը 20 ռ.:*

ՎԱԶԳԵՆ ԱՄԻՐԲԵԿՅԱՆ.— Անքուն գիշերներ, *178 էջ, գինը 8 ռ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

*ՎՖ 03034* *Պատվեր № 592* *Տիրաժ 8.100*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 14 1949 г.